Պրոլետարներ բոլոր երկրների, միացե՛ք։

ՀԿԿ Կենտկոմի
պրոպագանդայի և
ագիտացիայի բաժին

# ԱԳԻՏԱՏՈՐԻ ԲԼՈԿՆՈՏ

ՍԵՊՏԵՄԲԵՐ **17** 1961




## ԲՈՎԱՆԴԱԿՈՒԹՅՈՒՆ



---

Խմբագրության հասցեն.— Երևան, ՀԿԿ Կենտկոմ, II հարկ, 60-րդ սենյակ, հեռախոս՝ 2—52—78.

## Содержание





Адрес редакции—Ереван, ЦК КП Армении, II этаж, ком. 60, тел. 2-52-78.



# ԶՐՈՒՅՑ ԿՈՄՈՒՆԻԶՄԻ ԿՈՒԼՏՈՒՐԱՅԻ ՄԱՍԻՆ

Սովետական գրականությունը և արվեստը կարևոր տեղ են գրավում այն արտասովոր վերելքում, որով համակված է մեր երկիրը ՍՄԿՊ XXII համագումարի նախապատրաստման կապակցությամբ: Արվեստի և գրականության աշխատողները, սովետական ամբողջ ժողովրդի հետ միասին, ակտիվորեն մասնակցում են ՍՄԿՊ Ծրագրի նախագծի քննարկմանը, որի մեջ հսկայական տեղ են գրավում ժողովրդի հոգևոր կյանքի հարըստացման, սովետական կուլտուրայի հետագա զարգացման հարցերը:

Այն մեծ ուշադրությունը, որ Ծրագրի նախագծում դարձված է կուլտուրական շինարարության վրա, մի անգամ ևս վկայում է, որ Կոմունիստական պարտիան այդ հարցերը համարում է իր սեփական, հարազատ, համաժողովրդական տեսակետից կարևոր

հարցեր։ Մարդկային անհատի բազմակողմանի և ներդաշնակ զարգացումը պարտիայի առաջնահերթ խնդիրներից մեկն է։

Սովետական երկրում արվեստի և գրականության մեծ արժեքները մարդկության պատմության մեջ առաջին անգամ դարձել են ժողովրդական ամենալայն մասսաների սեփականությունը։ Հոկտեմբերյան ռևոլյուցիայից հետո անցած տարիների ընթացքում ՍՍՌՄ-ում ստեղծվել է սոցիալիստական մեծ կուլտուրա, որով հրճվում է ամբողջ աշխարհը։ Այդպիսի կուլտուրայի մասին էր երազում Վլադիմիր Իլյիչ Լենինը, երբ 1905 թվականին, ռուսական առաջին ռևոլյուցիայի ամենաեռուն պահին, գրեց իր «Պարտիական կազմակերպություն և պարտիական գրականություն» նշանավոր աշխատությունը։ Սոցիալիզմի համար մղվող պայքարում հսկայական նշանակություն տալով գաղափարախոսությանը, Իլյիչը խորաթափանց կերպով տեսնում էր, որ այդ պայքարում կարևոր տեղ կպատկանի գրականությանն ու արվեստին։

Հետաքրքիր է վերհիշել, թե համաշխարհային պրոլետարիատի առաջնորդի կյանքում ինչպիսի տեղ էին գրավում գրականությունն ու արվեստը։



Ա. Վ. Լունաչարսկին պատմում է, թե
ինչպես առաջին ռուսական ռևոլյուցիայի
ժամանակ մի անգամ Վ. Ի. Լենինի հետ
միասին գիշերելիս են եղել մի բնակարանում,
որի սենյակներից մեկում կար գրողների վե-
րաբերյալ մենագրություններ պարունակող
մի գրադարակ։ Վլադիմիր Իլյիչի համար
քնելու տեղ պատրաստեցին այդ գրադարակի
կողքին։ Առավոտյան նա դուրս եկավ դեղնը-
ված, քնատ։ Հարցնում ենք՝ ի՞նչ է պատա-
հել։ Պարզվում է, որ ամբողջ գիշերը չի քնել։
Ինչո՞ւ։ Բոլորը շփոթվում են։ Գուցե հար-
մա՞ր չի եղել... Որևէ մեկն աղմկե՞լ է։ Ոչ։ Դե,
ուրեմն հոգսերը թույլ չեն տվել, որ
Վլադիմիր Իլյիչը քնի։ Վերջապես, Վլադիմիր
Իլյիչն ասում է.

«Ամբողջ գիշերը չքնեցի, այդ գրքույկնե-
րըն էի կարդում, չափազանց հետաքրքիր
են... Իրար հետևից վերցրի և հափշտակվեցի։
Ինչքան ափսոսում եմ, որ չհասցրի բոլորը
կարդալ. եթե շատ ժամանակ ունենայի, կու-
զենայի հիմնավորապես ուսումնասիրել
մարդկային հասարակական կյանքի այդ
կողմը»։

Ահա մի ուրիշ օրինակ, որը վկայում է,
թե ռևոլյուցիայի մեծ առաջնորդը իր կյան-
քում և աշխատանքում ինչպիսի տեղ էր

հատկացնում գրականությանը։ Լրացնելով
ՌԿ(բ)Պ Համառուսաստանյան XI կոնֆե-
րանսի պատգամավորի անկետան, Վլադիմիր
Իլյիչը «Պրոֆեսիան և մասնագիտությունը
մինչև 1917 թվականը» հարցին պատասխա-
նել է՝ «Գրականագետ»։

Վերընթերցելով այդ փաստաթղթերը,
հասկանում ես, թե ինչու Լենինի պարտիան
այնքան խորապես շահագրգռված է եղել
գրականության ու արվեստի զարգացմամբ,
մեր երկրում կուլտուրական ռևոլյուցիայի
իրագործմամբ։ Արվեստի հարցերի շուրջը
Իլյիչի ունեցած բազմաթիվ ասույթները և
ելույթները, նրա մշտական հոգատարությու-
նը և աջակցությունը մեր երկրի կուլտուրա-
կան կյանքում երևան եկած ամեն մի նոր
երևույթի նկատմամբ, առանձնապես թանկ
են այսօր, երբ սովետական ժողովրդի հոգե-
վոր կյանքն անցնում է իր առաջընթաց զար-
գացման նշանավոր էտապը։

Մեր երկիրը թևակոխել է սովետական
հասարակության պատմության մի այնպիսի
շրջան, երբ յուրաքանչյուր մարդու առջև հը-
նարավորություն է բացվում լիովին և հրա-
պուրանքով նվիրվելու իր աշխատանքին։ Եվ
որքան մենք ավելի ենք մոտենում կոմու-
նիզմին, որքան բարձր է նյութական կյանքի



մակարդակը, այնքան ավելի լայն են տա-
ղանդների համակողմանի զարգացման հնա-
րավորությունները, այնքան ավելի վառ կեր-
պով է տեղի ունենում մարդու հարմոնիկ
ծաղկումը։

Արտադրության լիակատար մեքենայա-
ցումը, որը կիրագործվի մոտ ապագայում,
աշխատանքային օրը կկրճատի հասցնելով
հինգ և ավելի պակաս ժամի և համապա-
տասխանաբար կավելացնի հասարակական
ու գիտական գործունեության, կուլտուրական
և ֆիզիկական զարգացման համար զբաղվե-
լու ժամանակը։

Ծրագրի նախագծում ասված է՝ «Պար-
տիան անդուլ կերպով կհոգա գրականու-
թյան, արվեստի, կուլտուրայի ծաղկման, յու-
րաքանչյուր մարդու անձնական ընդունակու-
թյունների առավել լրիվ դրսևորման համար
բոլոր պայմանների ստեղծման, բոլոր աշ-
խատավորների էսթետիկական դաստիա-
րակման, ժողովրդի մեջ գեղարվեստական
բարձր ճաշակի և կուլտուրական ունակու-
թյունների ձևավորման մասին»։

Այդ բոլորն ասում են այն մասին, որ սո-
վետական ժողովրդի գեղարվեստական դաս-
տիարակության հարցը առաջվա պես լինելու
է մեր պարտիայի կարևորագույն խնդիրնե-

րից մեկը, որ կոմունիզմի կառուցումը ոչ միայն արտադրական ուժերի հզոր աճ է, այլև սովետական մարդկանց հոգևոր աճ։ Ահա թե ինչու Ծրագրի նախագծում այնքան մեծ տեղ է հատկացված կուլտուրայի նյութական բազայի հետագա հզոր վերելքին, ահա թե ինչու այնքան մեծ խնդիրներ են դրվում գրականության ու արվեստի աշխատողների առջև։

«Լավատեսությամբ և կոմունիստական կենսահաստատ գաղափարներով տոգորված սովետական գրականությունը և արվեստը խաղում են գաղափարական-դաստիարակչական մեծ դեր, սովետական մարդու մեջ զարգացնում են նոր աշխարհի կառուցողի հատկություններ։ Նրանք կոչված են ուրախության և ոգեշնչման աղբյուր ծառայելու միլիոնավոր մարդկանց համար, արտահայտելու նրանց կամքը, զգացմունքներն ու մտքերը, կոչված են նրանց գաղափարական հարստացման ու բարոյական դաստիարակման միջոց ծառայելու»,— ասված է Ծրագրի նախագծում։

Հարկավոր է կանգ առնել այն հարցի վրա, թե պարտիան իր աշխատանքում ինչպիսի հսկայական դեր է հատկացնում ապագա մարդու կերպարին։ Դա առավել ևս կա-



րևոր է, քանի որ վերջին տարիներս մեր մամուլում որոշ ընկերներ խիստ սխալ դատողություններով հանդես են եկել ապագա մարդու կյանքում գրականության ու արվեստի ունենալիք դերի մասին։ «Կոմսոմոլսկայա պրավդա»-ի էջերում 1959 թվականի աշնանը անցկացված բանավեճը՝ ներկա սերնդի հոգևոր կյանքում գրականության ու արվեստի ունեցած դերի մասին, երևան հանեց այդ առթիվ եղած խորապես սխալ հայացքները։ Որոշ ինտելիգենտների մոտ հանդիպում ենք այնպիսի դատողությունների, ըստ որոնց ճշգրիտ գիտությունների և տեխնիկայի աչքի ընկնող զարգացումը ետին պլանն է մղում գրականությունն ու արվեստը, այդպիսիք դարձնում երկրորդական, անհեռանկար։

Դրանք միանգամայն սխալ մտքեր են, որովհետև կյանքը, գիտությունն ու արվեստը միշտ առաջ են մղել ու առաջ պիտի մղեն ոչ թե նեղ մասնագետները, այլ համաչափորեն զարգացած անձինք։

Ծրագրի նախագծում, ինչպես և վերջին տարիների պարտիական փաստաթղթերում, հստակորեն ձևակերպված են այն ուղիները, որոնցով ընթանում են մեր գրականու-

թյունը և արվեստը, նրանց զարգացման գլխավոր ուղղությունը։

«Գրականության և արվեստի զարգացման մեջ գլխավոր գիծը ժողովրդի կյանքի հետ ունեցած կապերի ամրապնդումն է, սոցիալիստական իրականության հարստության և բազմազանության ճշմարտացի և բարձր գեղարվեստական արտացոլումը, նորի, հիրավի կոմունիստականի ոգեշունչ և պայծառ վերարտադրությունը և այն ամենի մերկացումը, ինչ դիմադրում է հասարակության առաջընթաց շարժմանը»,— ասված է ՍՄԿԿ Ծրագրի նախագծում։

Թեև վերջին տարիներս գրականության ու արվեստի աշխատողներն ստեղծել են մի շարք հրաշալի երկեր, այնուամենայնիվ, սովետական մարդկանց հերոսական աշխատանքը գրականության և արվեստի ստեղծագործություններում դեռևս չեն գրավում այն մեծ տեղը, որ արժանի են գրավելու։

Ժամանակակիցների՝ կոմունիզմի ակտիվ կառուցողների կերպարների ստեղծումը, գեղարվեստական ստեղծագործության սերտ կապը ռեալ կյանքի, ժողովրդի պրակտիկայի հետ, ահա այն վճռական գործոնը, որով հասարակությունը որոշել է ու պիտի



որոշի գրականության ու արվեստի ստեղծագործության արժեքը։

Տեսնել կյանքում եղած գլխավորը, նորը, բուն իրականության մեջ եղած ռևոլյուցիոնը՝ ահա գեղարվեստական ստեղծագործության գնահատման պարտիական մոտեցման կարևորագույն սկզբունքը։

Գրականության ու արվեստի պարտիականության լենինյան սկզբունքը միշտ եղել է սովետական գրականության ու արվեստի զարգացման հիմնադիր սկզբունքը։ Ահա թե ինչու ՍՄԿԿ Ծրագրի նախագծում այնքան կարևոր դեր է հատկացվում գրականության ու արվեստի զարգացման նկատմամբ պարտիական սիստեմատիկ ղեկավարությունն իրագործելուն։

Սովետական գրականության ու արվեստի զարգացման ամբողջ փորձը ցույց է տալիս, որ Կոմունիստական պարտիան պայքարում է ստեղծագործության իսկական ազատության համար։

«Կոմունիզմի հաղթանակը կախված է մարդկանցից, և կոմունիզմը մարդկանց համար է կառուցվում։ Յուրաքանչյուր սովետական մարդ իր աշխատանքով մոտեցնում է կոմունիզմի հաղթանակը»։

ԹԱՄԱՐԱ ԴԱԴՅԱՆ

# ՆՈՐ ՈՒՍՈՒՄՆԱԿԱՆ ՏԱՐԻՆ

Սկսվեց նոր, 1961—62 ուսումնական տարին: Ժողովրդական կրթության բնագավառի աշխատողները հսկայական խանդավառությամբ ընդունեցին ՍՄԿՊ նոր Ծրագրի և նոր Կանոնադրության նախագծերը, որտեղ պարզ ու հստակորեն նախատեսված են լենինյան պարտիայի անսահման հոգատարությունը աճող սերնդի կրթության և կոմունիստական դաստիարակության նկատմամբ:

Դպրոցական կոլեկտիվներում, մանկավարժական խորհուրդներում և ծնողական ժողովներում կոմունիզմի կառուցման այդ փաստաթղթերի քննարկումը մեծ ոգևորություն ու ուրախություն են առաջ բերել:

Նոր ուսումնական տարվա նախօրյակին ամբողջ աշխարհը հիացմունքով ու հպարտությամբ նշեց սովետական գիտության մեծագույն նվաճումները և սովետական մարդկանց աշխատանքային հաջողությունները տիեզերքը նվաճելու բնագավառում: Սովետական ուսուցչի զավակ, կոմունիստ, տիե-



զերագնաց օդաչու Գերման Տիտովը «Վոստոկ—2» արբանյականավով ավելի քան 25-ժամյա թռիչք գործեց երկրագնդի շուրջը:

Սովետական մանկավարժները միահամուռ կերպով հավանություն տվեցին ընկեր Ն.Ս. Խրուշչովի օգոստոսի 7-ին ռադիոյով և հեռուստատեսությամբ ունեցած ելույթին:

Նոր ուսումնական տարվա նախօրյակին տեղի ունեցած այս մեծագույն իրադարձությունները լուսավորության բնագավառի աշխատողներին պարտավորեցնում են ուժ ու եռանդ չխնայել աճող սերնդի կրթության և դաստիարակության գործում: Եվ այժմ նրանք իրենց ամբողջ գիտելիքները ներդնում են ՍՄԿՊ և ՀԿՊ XXII համագումարները արժանավայել գործերով դիմավորելու համար:

Ընթացիկ ուսումնական տարում Երևան քաղաքում ավարտվելու է դպրոցների վերակառուցումը: «Կյանքի հետ դպրոցի կապի ամրապնդման և ժողովրդական կրթության սիստեմի հետագա զարգացման մասին» օրենքի կենսագործման 3-րդ տարում քաղաքում գործելու են 172 դպրոցներ՝ շուրջ 93 հազար աշակերտներով: Պատվով են կատարված ՍՄԿՊ XXII համագումարն արժանավայել դիմավորելու համար քաղաքային

և շրջանային ժողովրդական կրթության բաժինների կողմից վերցրած պարտավորությունները։ Դեռևս 1960—61 ուսումնական տարին չավարտված՝ ուժեղ թափով սկսվեց նոր ուսումնական տարվա նախապատրաստումը, որի շնորհիվ սահմանված ժամկետից մեկ ամիս առաջ բարձր որակով ավարտվեց դպրոցական 123 շենքերի և գույքի վերանորոգումը։ Շուրջ 100 հազար ռուբլու գույքով հարստացվեցին դպրոցների քիմիայի, ֆիզիկայի և բնագիտության կաբինետներն ու լաբորատորիաները։ Մետաղամշակման, փայտամշակման, էլեկտրատեխնիկայի, կարուձևի արհեստանոցների համար ձեռք են բերվել 235 նոր հաստոցներ, զանազան գործիքներ, կարի մեքենաներ և այլ սարքավորումներ։ Կրուպսկայայի անվան միջնակարգ դպրոցում կահավորված է միջդպրոցական էլեկտրատեխնիկայի կաբինետ։ Վորոշիլովի, Ձերժինսկու անվան, № 49 և № 65 դպրոցներում կազմակերպվում են միջդպրոցական մետաղամշակման ու փայտամշակման օրինակելի արհեստանոցներ՝ կարուձևի, գորգագործական, ձեռագործի, կոշկակարական, կապի զանազան տեսակների ուսուցման արհեստանոցներ են ստեղծ-



վել բազմաթիվ մասսայական և մի շարք գիշերօթիկ դպրոցներում։

Նոր ուսումնական տարում քաղաքի աշակերտությունը կստանա նորակառույց 10 դպրոցական շենք։ Սեպտեմբերի 1-ից սկսեց գործել Էջմիածնի խճուղու վրա կառուցված գիշերօթիկ նոր դպրոցը, որն ունի 360 սան։ Մինչև տարվա վերջը Նորքում և Շահումյանի շրջկենտրոնում շահագործման կհանձնըվեն ևս գիշերօթիկ 2 դպրոցներ՝ 930 տեղով։ Պարտիական և սովետական օրգանների օգնությամբ քաղաքի դպրոցներում 3-րդ հերթի պարապմունքները վերացնելու նպատակով սկսված է և շուտով կավարտվի դպրոցական 10 շենքերի վերնահարկերի կառուցումը։

Մայրաքաղաքի դպրոցներում այս տարի լրիվ կենսագործվելու է ութամյա պարտադիր ուսուցումը։ 28 յոթնամյա դպրոցներ դարձել են ութամյա, որի շնորհիվ 7-րդ դասարաններն ավարտած աշակերտները կշարունակեն սովորել ութերորդ դասարաններում։ Անցած ուսումնական տարվանից զգալիորեն նվազել է աշակերտների մաղումը դպրոցներում։ Եթե 1959—60 ուսումնական տարում մաղումները կազմում էին աշակերտների ընդհանուր թվի 2,4 տոկոսը, ապա 1960—61 ուսումնական տարում դրանք ի-

ջան 1,6 տոկոսի։ Պարտադիր ուսուցման հասակի 7 տարին լրացած շուրջ 13000 աշակերտներ ընդունված են մասսայական և գիշերօթիկ դպրոցների առաջին դասարաններում։

Կյանքի հետ դպրոցի կապի ամրապնդման մասին օրենքը լայն հնարավորություններ բացեց ուսուցումը հանրօգուտ աշխատանքի հետ զուգակցելու, աճող սերնդի գիտելիքների մակարդակը բարձրացնելու և կոմունիստական դաստիարակությունն ապահովելու համար։ Դպրոցներում անցկացվող վերակառուցումը հիանալի պտուղներ է տալիս։ Աշակերտների կատարած հասարակական հանրօգուտ աշխատանքը նրանց դաստիարակության հզոր միջոց է դարձել, այն բարձրացրել է կարգապահության մակարդակը։

Ուսման և աշխատանքի ճիշտ զուգակցման դեպքում դպրոցականները ձեռք են բերում արտադրական ունակություններ, նրանց գիտելիքներն ավելի խոր, բազմակողմանի և մնայուն են դառնում։ Ահա թե ինչու անցած ուսումնական տարվա շատ շրջանավարտներ հասունության ատեստատի հետ միաժամանակ արտադրական ձեռնարկություններից ստացան ձեռք բերած մասնագիտությունների մասին համապատասխան տեղեկանք-





ներ։ Ներկայումս այդ շրջանավարտներից շատերը հաջողությամբ աշխատում են Երևանի ալյումինի, ժամացույցի, էլեկտրաճշգրիտ գործիքների, ավտոպահեստամասերի, Կիրովի անվան և պահածոների գործարաններում, կարի № 1 ֆաբրիկայում, մահուդի և բրդյա նուրբ գործվածքների կոմբինատում։

ՍՍՌՄ Մինիստրների Սովետի վերջերս ընդունած միջնակարգ հանրակրթական դպրոցների սովորողների արտադրական ուսուցումը բարելավելու մասին որոշման կենսագործման նպատակով քաղաքի միջնակարգ հանրակրթական բոլոր դպրոցները 1961—62 ուսումնական տարում անցնելու են աշակերտների արտադրական ուսուցման։ Աշակերտներին տրվելու է խառատի, փականագործի, ֆրեզերողի, էլեկտրիկի, ատաղձագործի, կարող-ձևողի, ջուլհակի, կոշկակարի, սղագիր-մեքենագրուհու, շինարարի և արդյունաբերական ու սննդային ապրանքներ վաճառողի, գծագրողների, հաշվային աշխատողի, պտղաբույծի, բանջարաբույծի և այգեգործի մասնագիտություն։

Կյանքը լիովին հաստատեց, որ միանգամայն ճիշտ և ժամանակին էր արտադրական հանրօգուտ աշխատանքի հետ ուսուցումը



զուգակցելու միջոցառումների ընդունումը, որպես աճող սերնդի կրթության հետագա վերելքի և կոմունիստական դաստիարակության միջոցի:

1961—62 ուսումնական տարում կարևոր հարցերից մեկն էլ աշակերտների կողմից օտար լեզուների ուսումնասիրության բարելավման հարցն է: Այդ մասին ՍՍՌՄ Մինիստրների Սովետը վերջերս հատուկ որոշում ընդունեց, որը բխում է դպրոցների վերակառուցման օրենքից:

Գիտության, տեխնիկայի և կուլտուրայի տարբեր ճյուղերի մասնագետների պատրաստման, միջազգային կապերի լայն զարգացման և կուլտուրական ու գիտատեխնիկական նվաճումներին տեղյակ լինելու տեսակետից օտար լեզուների իմացությունը ներկայումս խիստ կարևոր նշանակություն ունի: Մայրաքաղաքի դպրոցներում վերջին տարիներին օտար լեզուների դասավանդումը որոշ չափով բարելավվել է:

Անցյալ տարի մայրաքաղաքում կազմակերպվեց անգլերեն լեզվով մի շարք առարկաներ ուսուցանող մեկ դպրոց: Նոր ուսումնական տարում կգործեն անգլերեն ու ֆրանսերեն լեզուներով ուսուցումը կազմակերպող մեկ գիշերօթիկ և մեկական մասսայական



դպրոցներ Սպանդարյանի ու Լենինյան շըր-
ջաններում: Օտար լեզուների ուսուցումը, ինչ-
պես հայտնի է, մասսայական և բանբերիտ
դպրոցներում սկսվում է 5-րդ դասարանից:
Նոր որոշմամբ ուսումնական տարվա սկըզ-
բից 25 և ավելի աշակերտ ունեցող դասա-
րանները բաժանվելու են երկու խմբի, որ-
պեսզի օտար լեզուների ուսուցումը հաջող
կազմակերպվի:

ՍՄԿՊ Ծրագրի նախագծում նախատես-
ված է առաջին տասնամյակի ընթացքում
(1961—1970 թթ.) իրականացնել պարտա-
դիր միջնակարգ ընդհանուր և պոլիտեխնի-
կական տասնմեկամյա կրթությունը դպրո-
ցահասակ բոլոր երեխաների համար և 8-
ամյա կրթությունն արտադրության մեջ այն
աշխատողների համար, ովքեր չունեն համա-
պատասխան կրթություն: Ուստի յուրաքան-
չյուր դպրոցի, մանկավարժական կոլեկտիվի
և ամեն մի ուսուցչի պատվի խնդիրն է՝ ու-
սումնական տարվա ընթացքում ձեռք առնել
բոլոր միջոցները ուսումնադաստիարակչա-
կան աշխատանքները բարելավելու համար:

Գ. ՆԵՐՍԻՍՅԱՆ

Երևանի քաղաքային ժողկրթության բաժնի
վարիչ, Հայկական ՍՍՌ վաստակավոր
ուսուցիչ

## ՄԵՐ ՌԵՍՊՈՒԲԼԻԿԱՅԻ ՆՈՐ ՀԱՋՈՂՈՒԹՅՈՒՆՆԵՐԸ

Սովետական ժողովուրդը թևակոխեց
յոթնամյակի երրորդ տարվա երկրորդ կեսը։
Անցավ ևս վեց ամիս, որոնք լի էին գործա-
րանների, ֆաբրիկաների ու հանքահորերի
կոլեկտիվների լարված ու անձնվեր աշխա-
տանքով։ Այդ աշխատանքը սոցիալիստա-
կան արդյունաբերությանը բերեց նոր հա-
ջողություններ։

Անցած վեց ամսում շարք մտան թե նոր
արդյունաբերական ձեռնարկություններ և թե
լրացուցիչ կարողություններ՝ արդեն գործող
ձեռնարկություններում։

Ռեսպուբլիկայի արդյունաբերության բա-
գայի հետագա զարգացման ու ընդլայնման
միջոցառումների շնորհիվ այս տարվա առա-
ջին կիսամյակում մեր ձեռնարկությունների
թողարկած արտադրանքի ծավալը, անցած
տարվա նույն ժամանակամիջոցի համեմա-
տությամբ, աճեց ավելի քան 9 տոկոսով,



իսկ ժողտնտխորհի ձեռնարկություններում՝
9,4 տոկոսով։

Ռեսպուբլիկայի արդյունաբերական ձեռ-
նարկությունները առաջին կիսամյակի հա-
մախառն արտադրանքի թողարկման պետա-
կան պլանը կատարեցին 102,7 տոկոսով, ո-
րից ժողտնտխորհի ձեռնարկությունները՝
102,4 տոկոսով։

Այս տարվա անցած վեց ամսում, անցյալ
տարվա նույն ժամանակամիջոցի համեմա-
տությամբ, մեքենաշինության և մետաղա-
մշակման արդյունաբերության արտադրան-
քը աճել է 26 տոկոսով, այդ թվում հաստո-
ցաշինությունը՝ 56 տոկոսով և սարքաշինու-
թյունը՝ 44 տոկոսով։ Նույն ժամանակամիջո-
ցում քիմիական արդյունաբերության ար-
տադրանքն ավելացել է 11 տոկոսով, անտա-
ռային, թղթի և փայտամշակման արդյունա-
բերությանը՝ 7 տոկոսով, շինանյութերինը՝
16 տոկոսով, թեթև արդյունաբերությանը՝
7 տոկոսով։ Զգալիորեն աճել է նաև գունա-
վոր մետալուրգիայի արտադրանքը։

Առաջին կիսամյակում մեր ռեսպուբլի-
կայում արտադրվել են 104.985 տոննա հան-
քային պարարտանյութեր, 16.433 հատ մին-

չև 100 կիլովատանոց գեներատոր, 127.331 հատ մինչև 100 կիլովատանոց էլեկտրաշարժիչ, 11.594 հատ շարժական էլեկտրակայան, 21.441 հատ կենտրոնախույս ու թիավոր պոմպեր, 119.755 խորանարդ մետր երկաթբետոնե հավաքովի կոնստրուկցիա ու դետալ և բազմատեսակ ու բազմաթիվ ժողովրդական սպառման առարկաներ։

Ռեսպուբլիկայի արդյունաբերության մեջ հատկանշականն այն է, որ 1961 թվականի առաջին կիսամյակում, անցյալ տարվա համապատասխան ժամանակաշրջանի համեմատությամբ մեծ չափերով ավելացել է արդյունաբերական արտադրանքի թողարկումը։ Օրինակ, անցյալ տարվա առաջին կիսամյակի համեմատությամբ այս տարվա առաջին կիսամյակում ավելի է արտադրվել 1.097 հատ կենտրոնախույս պոմպ, 37 հազար հատ ավտոդող, 3.094 տոննա ցեմենտ, 3 միլիոն 294 հազար պայմանական սալ շիֆեր։

Նախորդ տարվա համեմատությամբ զգալի քանակությամբ ավելացել է նաև կոշկեղենի, գործվածքեղենի, հագուստեղենի և սննդամթերքների արտադրությունը։ Օրինակ, այս տարվա առաջին կիսամյակում անցյալ տարվա նույն ժամանակաշրջանի



համեմատությամբ ավելի է արտադրվել 376 հազար զույգ կաշվե կոշիկ, 3.332 տոննա բամբակաթել, 199 հազար քառակուսի մետր մետաքսե գործվածք, 54 հազար հատ տրիկոտաժե վերնազգեստ, 1.225 տոննա անարատ կաթնամթերք, 461 հազար պայմանական տուփ պահածո, 4.044 տոննա շաքարավազ, 100 տոննա յուղ, 677 տոննա ձեթ և այլն։

Ռեսպուբլիկայի արդյունաբերության բոլոր ճյուղերում խոշոր աշխատանք է կատարվել արտադրական-տեխնոլոգիական սարքավորումները լայնորեն մոդեռնացնելու ուղղությամբ։ Անցած կիսամյակում մոդեռնացվել են զգալի քանակությամբ մետաղահատ հաստոցներ, մետաղաձուլման, փայտամշակման և բազմաթիվ այլ սարքավորումներ։

Հարազատ Կոմունիստական պարտիան միշտ էլ մեծ կարևորություն է տվել գյուտարարությանն ու ռացիոնալիզատորությանը։ Անցած կիսամյակում ռեսպուբլիկայում կատարվել է 7 հազար գյուտարարական և ռացիոնալիզատորական առաջարկություն։ Այդ առաջարկություններից 4 հազարը արդեն արմատավորվել է ձեռնարկություններում,

որը երկրին կտա 3 միլիոն ռուբլու խնայողություն։

Դեռ նոր էր պարտիայի Կենտրոնական Կոմիտեի Հունվարյան պլենումը որոշում ընդունել ՍՄԿԿ XXII համագումարը հրավիրելու մասին, երբ մեր ամբողջ երկրում սոցիալիստական մրցություն ծավալվեց համագումարը արժանավայել գործերով նշանավորելու համար։ Ջերմ սիրով ու խանդավառությամբ մասնակցելով համաժողովրդական այդ մրցությանը մեր ռեսպուբլիկայի արդյունաբերության աշխատողները որոշակի հաջողություններ ձեռք բերեցին աշխատանքի արտադրողականության բարձրացման գործում։ Այս տարվա առաջին կիսամյակում ռեսպուբլիկայի արդյունաբերության մեջ աշխատանքի արտադրողականության բարձրացման պլանը կատարված է 100,4 տոկոսով։

Անցյալ տարվա առաջին կիսամյակի համեմատությամբ մեծ են հաջողությունները կապիտալ շինարարության բնագավառում։ Այս տարվա վեց ամսում, անցյալ տարվա նույն ժամանակաշրջանի համեմատությամբ. կապիտալ ներդրումների ծավալն աճել է 15 տոկոսով, իսկ շինարարական-մոնտաժային աշխատանքներինը՝ 16 տոկոսով։ Միայն



անցած կիսամյակում 56 միլիոն ռուբլու շինարարական-մոնտաժային աշխատանք է կատարվել։

Կիսամյակում կապիտալ ներդրումները հատկապես աճել են ժողովրդական տնտեսության առաջատար ճյուղերում։ Այսպես, օրինակ, մեքենաշինության մեջ կապիտալ ներդրումների աճը կազմում է 20 տոկոս, քիմիական արդյունաբերության մեջ՝ 39 տոկոս, շինանյութերի արդյունաբերության և շինարարական ինդուստրիայի մեջ՝ 16 տոկոս, թեթև արդյունաբերության մեջ՝ 18 տոկոս, սննդի արդյունաբերության մեջ՝ 11 տոկոս և տրանսպորտում՝ 47 տոկոս։

Սակայն ռեսպուբլիկայի արդյունաբերության առաջին կիսամյակում ձեռք բերած այս զգալի հաջողությունների հետ միասին մի շարք ճյուղերում նկատվում է համախառն արտադրանքի թողարկման տեմպի որոշ դանդաղում։

Չնայած այն բանին, որ ռեսպուբլիկայի արդյունաբերության բոլոր ճյուղերը, ներառյալ նաև Ժողտնտխորհի յուրաքանչյուր վարչություն առանձին վերցրած, առաջին կիսամյակի արտադրանքի թողարկման պետական պլանը կատարել են, բայց պետա-

կան առաջադրանքը չկատարած ձեռնարկու-
թյունների թիվը քիչ չէ։
Եթե վերցնենք արդյունաբերության աշ-
խատանքը ամբողջ կիսամյակում, ապա
կպարզվի, որ թեև համախառն արտադրանքի
թողարկման պետական պլանը կատարված
է, սակայն 100 ձեռնարկություն իրենց պե-
տական պլանները չեն կատարել, որոնցից
55-ը ժողտնտխորհի սիստեմի ձեռնարկու-
թյուններ են։ Եթե նկատի ունենանք, որ այդ
պատճառով այդ ձեռնարկությունները երկ-
րին պարտք են մնացել 6 միլիոն ռուբլու
արտադրանք (որից ժողտնտխորհի ձեռնար-
կությունները՝ ավելի քան 4,7 միլիոն ռուբ-
լու), ապա պարզ կլինի, որ շատ մեծ ռե-
զերվներ մնում են չօգտագործված և ոչ բո-
լոր արդյունաբերական ձեռնարկություններն
են կատարում իրենց պարտքը պետության ու
ժողովրդի առջև։
Եվ մնացող ձեռնարկությունների կողքին
ունենք առաջավոր ձեռնարկություններ, ո-
րոնց մասին գոհունակության զգացումով
կարելի է խոսել։ Այդ ձեռնարկությունները
հաստատուն և կայուն կերպով ամեն ամիս
ունենում են աշխատանքի լավ ցուցանիշներ։
Դրանց թվին են պատկանում Երևանի Կի-
րովի անվան, ալյումինի, ավտոդողերի, է-



լեկտրաապարատների, սարքաշինական գոր-
ծարանները, Ալավերդու պղնձաքիմիական,
Քաջարանի պղնձամոլիբդենային կոմբի-
նատները, Լենինականի մանածագործարա-
նը և գուլպա-տրիկոտաժի ֆաբրիկան, Ա-
րարատի ցեմենտ-շիֆերի կոմբինատը, Հոկ-
տեմբերյանի պահածոների գործարանը և
շատ այլ ձեռնարկություններ, որոնք պետք է
օրինակ ծառայեն ռեսպուբլիկայի բոլոր ձեռ-
նարկությունների համար։
Այս տարվա առաջին կիսամյակում ան-
ցած տարվա համեմատությամբ համախա-
ռըն արտադրանքի ծավալը առավելագույն
չափով աճեց հաստոցաշինության մեջ (56
տոկոս), սարքաշինության մեջ (44 տոկոս),
մինչդեռ արդյունաբերության համախառն
արտադրանքի աճը կազմեց 9 տոկոս։ Այս
տեղաշարժերի շնորհիվ վերջին տարում մե-
քենաշինության և մետաղամշակման տեսա-
կարար կշիռը ռեսպուբլիկայի արդյունաբե-
րության ընդհանուր ծավալում աճեց 16,1
տոկոսից մինչև 18,7 տոկոս։
Անհրաժեշտ է նշել, որ կիսամյակում
գերակատարվել են արտադրանքի այնպիսի
կարևոր տեսակների արտադրության պլ-
անները, ինչպիսիք են էլեկտրաէներգիան,
ծծմբաթթուն, կաուստիկ սոդան, սինթետիկ

ամոնիակը, հանքային պարարտանյութերը, և ծանր արդյունաբերության արտադրանքի ժողովրդական սպառման առարկաների մի շարք այլ տեսակներ։

Ռեսպուբլիկայի արդյունաբերության ձեռք բերած նվաճումները անչափ ուրախացնում, բայց երբեք չեն հանգստացնում արտադրության մարդկանց։

Որքան ավելի է մոտենում պարտիայի XXII Համագումարի բացման օրը, այնքան ավելի լայնորեն է ծավալվում մրցությունը՝ երկրին ավելի շատ ու բարձրորակ արտադրանք տալու համար։ Դա գրավականն է այն բանի, որ արդյունաբերական ձեռնարկությունների աշխատանքում եղած թերությունները վճռականորեն կվերացվեն և մոտակա ամիսներում մեզ մոտ չի լինի պլանը թերակատարող ոչ մի ձեռնարկություն։

Հ. ՄԱՐՏԻՐՈՍՅԱՆ
Հայկական ՍՍՌ Կենտրոնական վիճակագրության վարչության պետ

---



# ԱԳԻՏԱՏՈՐԻ ԶՐՈՒՅՑԸ ՆՈՐԱՐԱՐՈՒԹՅԱՆ ՄԱՍԻՆ

Հարազատ Կոմունիստական պարտիայի նոր Ծրագրի նախագծում նախատեսված է, որ մեր երկրի արդյունաբերության ծավալը առաջիկա տասը տարում կավելանա մոտավորապես 2,5 անգամ, իսկ քսան տարվա ընթացքում՝ առնվազն վեց անգամ։ Ահա թե ինչպիսի պայծառ հեռանկարներ են բացվում սովետական ժողովրդի առջև։

Կոմունիզմի կառուցման այդ վիթխարի պլանի կատարումը մեզանից պահանջում է համառ ու անձնվեր աշխատանք։ Առավել և մեծ խնդիրներ են դրվում մեր հայրենասեր նորարարների ու ռացիոնալիզատորների առջև, որոնք կոչված են անընդհատ զարգացնելու և կատարելագործելու մեր արդյունաբերության տեխնիկան և տեխնոլոգիան, հեշտացնելու և ավելի արտադրողական դարձնելու սովետական մարդու աշխատանքը։

Այդ նկատի ունենալով՝ ունկնդիրների հետ ունեցած իմ հերթական զրույցը նվիրեցի գործարանի գյուտարարների և ռացիոնալիզատորների կատարած աշխատանքին։ Սկզբում ես նրանց բացատրեցի, թե արդյունաբերության զարգացումը ինչ դեր է խաղալու կոմունիզմի նյութատեխնիկական բազայի ստեղծման ու զարգացման գործում, ապա կարդացի Ծրագրի նախագծի այն մասը, որը վերաբերվում է պարտիայի խնդիրներին՝ տնտեսական շինարարության բնագավառում։ Այնուհետև ունկնդիրներին պատմեցի, որ մեր ամբողջ երկրի աշխատավորների հետ միասին հայրենասիրական մեծ աշխատանք են կատարում նաև մեր գործարանի նորարարներն ու ռացիոնալիզատորները։ Քսան տարի առաջ մեր գործարանի նոր թողարկած առաջին կաուչուկը ես նվեր տարա ՍՍՌՄ Գերագույն Սովետի սեսիային. այդ կաուչուկը այժմյանի համեմատությամբ տասնապատիկ անգամ թանկ էր և ցածրորակ։ Իսկ այժմ մեր գործարանը թողարկում է շատ էժան և բացառապես բարձրորակ կաուչուկ իր բազմաթիվ տեսակներով։ Հիմնովին վերակառուցվել են մեր ցեխերը, կատարելագործվել է արտադրության տեխնոլոգիան։



Եվ այդ բոլորը մեր բանվորների, ինժեներա-տեխնիկական աշխատողների ստեղծագործական ուժերի, մեր գյուտարարների և ռացիոնալիզատորների կատարած հայրենասիրական աշխատանքի արդյունքն են։

Կիրովցիները պարտավորվել են յոթնամյակի ընթացքում նորարարական և ռացիոնալիզատորական առաջարկությունների միջոցով երկրին տալ հինգ միլիոն ռուբլու օգուտ։ Եվ նրանք հաջողությամբ կատարում են իրենց ստանձնած պարտավորությունները։

Բավական է ասել, որ 1959 թվականին գործարանի նորարարների և ռացիոնալիզատորների կողմից արտադրության մեջ ներդրված առաջարկությունները երկրին տվել են 720 հազար ռուբլու օգուտ, իսկ 1960 թվականին այն հասավ 848 հազար ռուբլու։

Ընթացիկ տարվա անցած յոթ ամիսների ընթացքում գործարանի նորարարներն ու ռացիոնալիզատորները արդեն 375 արժեքավոր առաջարկություններ են արել, որոնցից արտադրության մեջ ներդրվել են 263-ը, որոնք տարեկան կտան 325 հազար ռուբլու տնտեսում։

Գործարանի կոլեկտիվի ջերմ սերն ու հարգանքն են վայելում անվանի ռացիոնալիզա-

տորներ Ս. Կոսեմյանը, Ա. Սարգսյանը, Վ. Խեմչյանը, Ա. Հայրապետյանը, Ժ. Դումանյանը, Ս. Գրիգորյանը, Զ. Առաքելյանը, Գ. Փանոսյանը և շատ ուրիշներ, որոնք իրենց նորարարական և ռացիոնալիզատորական արժեքավոր առաջարկություններով անընդհատ կատարելագործում են արտադրությունը։

Ձեզ հայտնի է, որ արդեն չորրորդ տարին է, ինչ Հայաստանի Ժողտնտխորհի ձեռնարկությունների մեջ մեր գործարանի կոլեկտիվը շարունակ ընթանում է առաջին շարքերում և իր ձեռքումն է պահում Հայկական ՍՍՌ Մինիստրների Սովետի ու ՀԱՄԽ-ի Փոխանցիկ դրոշը։ Այդ պատիվ է բերում մեր կոլեկտիվին. այդ պատվավոր գործում իրենց բաժինն ունեն նաև մեր ռացիոնալիզատորները։

Գործարանի կոլեկտիվը հաջողությամբ է կատարում նաև յոթնամյակի երրորդ տարվա պլանը։ Լայնորեն ծավալելով սոցիալիստական մրցություն ի պատիվ հարազատ Կոմունիստական պարտիայի XXII համագումարի, գործարանը ժամկետից շուտ՝ հուլիսի 17-ին կատարեց հիմնական արտադրանքի, իսկ հուլիսի 22-ին նաև համախառն արտադրանքի յոթ ամսվա պլանը, երկրին



պլանից դուրս տալով մեծ քանակությամբ կաուչուկ, կարբիդ, կաուստիկ սոդա, քլորբենզոլ և այլ արտադրանք։

Այս բոլոր հաջողությունների մեջ իրենց արժանի բաժինն ունեն մեր ցեխի նորարարներն ու ռացիոնալիզատորները։ Եթե սրանից մեկ-երկու տարի առաջ տեխնոլոգիական պրոցեսի պրիմիտիվության հետեվանքով ապարատավարը հազիվ էր կարողանում ղեկավարել 2—3 ապարատների պրոցես և տալ 1,5 տոննա արտադրանք, ապա այժմ արտադրության տեխնոլոգիական պրոցեսների ավտոմատացման շնորհիվ ապարատավարները հեշտությամբ կարողանում են ղեկավարել վեց և ավելի ապարատների պրոցես և մեկ հերթափոխում տալիս են ավելի քան 11,5 տոննա բարձրորակ արտադրանք։

Արտադրության ավտոմատացումը հնարավորություն տվեց վերացնելու տեխնոլոգիական պրոցեսների մեծ չափերի հասնող խախտումները։ Այժմ տեխնոլոգիական պրոցեսները ավտոմատ կերպով կարգավորվում են չափիչ և ստուգիչ սարքերով։ Բազմաթիվ են ցեխի բանվորներից և ինժեներա-տեխնիկական աշխատողներից ստացվող նորարա-

*րական և ռացիոնալիզատորական առաջարկությունները։*

*Մեր 30—30ա ցեխը նվաճել է կոմունիստական աշխատանքի կոլեկտիվի պատվավոր կոչումը։ Այդ բարձր կոչումը պարտավորեցնում է մեզ անընդհատ կատարելագործել արտադրությունը, ավելի լավ աշխատել, սոցիալիստական Հայրենիքին տալ ավելի շատ և բարձրորակ կաուչուկ։*

*Մեծ հեռանկարներ են բացվել մեր գործարանի առջև այս յոթնամյակում։ Այժմ հիմնական վերակառուցման են ենթարկվում գործարանի ցեխերը, կառուցվում են նոր, ավելի հզոր ցեխեր։ Բավական է ասել, որ հենց առաջիկա 1962 թվականին նախատեսվում է 70 տոկոսով ավելացնել գործարանի արտադրողականությունը։ Այդ մեզանից պահանջում է ավելի լարված ու անձնվիրաբար աշխատել, ժամանակին շահագործման հանձնել արտադրական նոր կարողությունները։ Գործարանի վերակառուցումից հետո մենք, որպես հիմնական հումք, կարբիդի փոխարեն պետք է օգտագործենք բնական գազը, իսկ դա կապված է լուրջ դժվարությունների հետ։ Ահա թե ինչու մեր բոլոր աշխատողները, առաջին հերթին մեր նորարարներն ու ռացիոնալիզատորները*



*պետք է ամեն ինչ անեն արագորեն տիրապետելու բնական գազով աշխատելու տեխնոլոգիան, երկրին տալու ավելի շատ, ավելի բարձրորակ և էժան կաուչուկ։*

*Այժմ, երբ սովետական ամբողջ ժողովուրդը մեծագույն խանդավառությամբ պայքարում է արտադրական նորանոր հաջողություններով դիմավորելու հարազատ պարտիայի XXII համագումարը, մեր խնդիրն է առավել մեծ ուշադրություն նվիրել արտադրության կատարելագործմանը, նորարարական և ռացիոնալիզատորական շարժման լայն ծավալմանը։ Դրան մեծապես կնպաստի այն, որպեսզի ժամանակին արտադրության մեջ ներդրվեն ստացված արժեքավոր առաջարկությունները։*

*Անհրաժեշտ է նոր, հզոր թափ հաղորդել նորարարական ու ռացիոնալիզատորական շարժմանը։ Այդ կլինի մեր նվերը հարազատ պարտիայի XXII համագումարին։*

*Զրույցի վերջում ունկնդիրներին պարզաբանեցի իրենց առաջիկա անելիքները և պատասխանեցի նրանց հարցերին։*

*Ս. ՀԱԿՈԲՅԱՆ*

**Երևանի Ս. Մ. Կիրովի անվան գործարանի 30—30ա ցեխի ագիտատոր**

## ԱԳԻՏԿՈՒԼՏԲՐԻԳԱԴԱՆ ՅԱՅԼԱՂՆԵՐՈՒՄ

Գորիսի շրջանի յայլաղները գտնվում են շրջանից 100—150 կիլոմետր հեռավորության վրա։ Յուրաքանչյուր տարի ավանդական սովորությամբ շրջանի կոլտնտեսությունները տասնյակ հազարավոր անասուններ տեղափոխում են Բազարչայ և «Ծռաբլուր» կոչվող արոտավայրերը։ Այդ վայրերը մայիս ամսից սկսած ծածկվում են առատ բուսականությամբ, ալպյան կանաչով։

Ինչպես հայտնի է, ընթացիկ տարին անասնապահության համար դժվարին տարի է, ռեսպուբլիկայում երաշտ է։ Սակայն այս պայմաններում անասնապահները երբեք չեն ընկճվում։ Նրանք, օգտագործելով բոլոր հնարավորությունները, հաղթահարում են այդ դժվարությունները։ Եթե նախորդ տարիներին շրջանի անասունների մի մասը մնում էր կոլտնտեսություններում, գյուղերի մոտակայքի արոտների բազայի վրա պահելու համար, ապա այս տարի այդ հնարա-



վորությունը չկա։ Դրա համար ստիպված, շրջանի կոլտնտեսությունները անասունների մեծ մասը բարձրացրել են յայլաղները։ Յայլաղներ են տեղափոխվել ավելի քան 71 հազար գլուխ մանր և 19 հազար գլուխ խոշոր եղջերավոր անասուն։ Անասունների համար կեր հայթայթելու նպատակով յայլաղներն են մեկնել մոտ 500 անասնապահներ։ Միայն Խնձորեսկ գյուղի կոլտնտեսության անասնապահները յայլաղներ են տեղափոխել 12 հազար գլուխ մանր եղջերավոր անասուն։

Անասնապահները յայլաղներում մնում են մոտ 4 ամիս. մայիս ամսից սկսած մինչև սեպտեմբերը։ Յայլաղներում ստեղծված են նպաստավոր պայմաններ անասնապահների կուլտուրական հանգստի համար։ Կոլտնտեսությունների և սովխոզների յայլաղներում կահավորված են կարմիր անկյունները, որտեղ տեղադրված են ռադիոընդունիչներ, գրականություն, խաղերի պարագաներ։ Անասնապահները ժամանակին ստանում են թարմ թերթեր, ամսագրեր և այլն։

Անասնապահների յայլաղային սեզոնի նախապատրաստական աշխատանքներն սկսվելու հետ միասին պատրաստվում են նաև շրջանի կուլտուր-լուսավորական հիմնարկ-

ները՝ կուլտուրայի տունը, ակումբները, գրադարանները և մյուս կազմակերպությունները։

— Այս օրերին ինչպե՞ս կարող ենք հանգիստ նստել, երբ յայլաղներում վճռվում է անասնապահության մթերատվության բարձրացման հարցը,— ասում է կուլտուրայի տան դիրեկտոր Պ. Քոչարյանը,— մենք,— շարունակում է նա,— աշխատում ենք ակտիվ մասնակցություն ցույց տալ այդ համաժողովրդական գործին։ Կազմակերպում ենք անասնապահների կուլտուրական հանգիստը, տարածում ենք առաջավորների փորձը։ Մեր կուլտուրայի տան ագիտ-կուլտբրիգադան արդեն երկու անգամ եղել է Գորիսի, Քարահունջի, Այգեձորի, Խոտի, Բայանդուրի և մյուս գյուղերի կոլտնտեսականների մոտ։ Շուտով նորից կլինենք նրանց մոտ։

Ագիտկուլտբրիգադան ղեկավարում է կուլտուրայի տան գեղարվեստական մասի վարիչ ընկ. Վ. Մինասյանը։ Բրիգադայի կազմի մեջ մտնում են 22 հոգի. դրանք երիտասարդ ակտիվիստներ են՝ բանվոր-ծառայողներ, տնային տնտեսուհիներ, դպրոցականներ։ Բրիգադայի աշխատանքներին ակտիվորեն մասնակցում են տնային տնտեսու-



հի, մեներգչուհի Մ. Հովհաննիսյանը, ավտովարորդ, պարող Գ. Միքայելյանը, հիվանդանոցի հնոցապան Հ. Շահվերդյանը և ուրիշներ։

Վերջերս ագիտկուլտբրիգադան եղավ Տեղ գյուղի կոլտնտեսության անասնապահների մոտ։ Նրա ելույթը անասնապահների կողմից ընկալվեց մեծ ուշադրությամբ և նրանք շատ գոհ մնացին։

— Ինչքա՜ն լավ է, որ շրջանում մեզ չեն մոռանում, հաճախ այցի են գալիս, ուսումնասիրում մեր աշխատանքը, հետաքրքրվում մեր կյանքով, կազմակերպում մեր կուլտուրական հանգիստը,— ասում են անասնապահները։

Ագիտկուլտբրիգադայի անդամները, լինելով անասնապահների մոտ, նրանց համար կարդում են զեկուցումներ և անցկացնում զրույցներ։ Բրիգադայի ղեկավար ընկ. Վ. Մինասյանը անասնապահների համար այս տարի անց է կացրել «Արտադրական բարձր ցուցանիշներով դիմավորենք ՍՄԿՊ XXII համագումարը», «ՍՄԿՊ նոր Ծրագիրը կոմունիզմի կառուցման ծրագիրն է» և այլ թեմաներով զրույցներ ու զեկուցումներ։

Կուլտբրիգադայի կարևոր խնդիրներից

մեկն էլ առաջավոր փորձի պրոպագանդան է, և նրանք այդ չեն մոռանում։ Այսպես, բրիգադայի անդամները, լինելով Գորիսի «Ավանգարդ» կոլտնտեսության և Վերին-Շեն սովխոզի կաթնաանասնապահական ֆերմաներում, ուսումնասիրելով առաջավոր կթվորուհիներ՝ Փ. Բալայանի, Ն. Հայրապետյանի, Է. Շալունցի փորձը, այդ մասին պատմեցին Խնձորեսկ գյուղի, «Լենինյան ուղիով» կոլտնտեսության կթվորուհիներին։ Հատկապես ուսանելի էր «Ավանգարդ» կոլտնտեսության կթվորուհի Էմմա Շալունցի փորձը։ Նա իր խնամած 13 կովից ստացել է 13 հորթ, սոցմրցմամբ ստանձնած 1750 կգ. կաթի դիմաց՝ 2080 կգ. կաթ։ Ի պատիվ ՍՄԿԿ XXII համագումարի Շալունցը խոստացել է յուրաքանչյուր կովի կաթնատվությունը հասցնել 2300 կիլոգրամի։

Անասնապահները հետաքրքրությամբ են լսում բրիգադայի երգիծանքի ու հումորի բաժնի համարները։ Այս բաժինը վարում է Գորիսի գյուղատնտեսական տեխնիկումի ուսանող Ա. Աբրահամյանը։ Նա իր ելույթում մեծարում է արտադրության առաջավոր մարդկանց և խիստ կերպով խարազանում կոլտնտեսային աշխատանքից խուսափող, հեշտ աշխատանք որոնող անբաններին։



Հետաքրքիր է կազմված ագիտկուլտբրիգադայի ծրագրի գեղարվեստական մասը, որտեղ կատարվում են այնպիսի երգեր, որոնք փառաբանում են պարտիան, գովերգում աշխատանքը, կոլտնտեսային մարդկանց հայրենանվեր գործերը։

Ագիտկուլտբրիգադան իր հետ յայլաղներն է տանում նաև թարմ թերթեր, ամսագրեր, խաղերի պարագաներ։

Հետաքրքիր է նաև այն, որ բրիգադայի անդամները, յայլաղներում ուսումնասիրելով անասնապահների աշխատանքը, այնտեղ անմիջապես լույս են ընծայում մարտական թերթիկներ, կայծակ թերթիկներ և այլն։

Ագիտկուլտբրիգադայի ծրագրի մեջ է մտնում նաև անասնապահներին կոնկրետ, պրակտիկ օգնություն կազմակերպելը։ Բրիգադայի անդամները լինելով տեղերում, անց են կացնում ագիտատորների հրահանգչական խորհրդակցություններ, սեմինարներ, նրանց տրամադրության տակ դնում անհրաժեշտ նյութեր։

Ագիտկուլտբրիգադան այժմ ժրաջանորեն պատրաստում է իր նոր ծրագիրը։ Շրջանի անասնապահները սիրով սպասում են բրիգադայի նոր ելույթներին։

Պ. ՍԱՖՅԱՆ

# ԿԱՏԱՐՈՒՄ ԵՆ ՍՏԱՆՁՆԱԾ ՊԱՐՏԱՎՈՐՈՒԹՅՈՒՆՆԵՐԸ

## (ԹՎԵՐ ԵՎ ՓԱՍՏԵՐ)

*Աշխատանքային բուռն խանդավառությամբ են համակված մեր ռեսպուբլիկայի աշխատավորները։ Սովետական Միության Կոմունիստական պարտիայի Ծրագրի նախագիծը հրապարակվելուց հետո նոր ուժերով ու եռանդով են աշխատում նրանք ՍՄԿՊ XXII համագումարը արժանավայել գործերով նշանավորելու համար։ Ահա թվեր և փաստեր այդ մասին։*

*Երևանի Ս. Մ. Կիրովի անվան գործարանի կոլեկտիվն անցած յոթ ամսվա համախառն արտադրանքի պլանը կատարել է 104,3 տոկոսով։ Առաջին կիսամյակում գործարանում տնտեսվել է 891 տոննա հումք, 2.764 տոննա վառելանյութ, 678 հազար կիլովատ-ժամ էլեկտրաէներգիա, արտադրանքի ինքնարժեքն իջեցվել է 3,16 տոկոսով։*

*Երևանի ալյումինի գործարանի կոլեկտիվը գերակատարելով երկրորդ եռամսյակի արտադրական պլանները՝ միաժամանակ տնտեսել է 768 հազար կիլովատ-ժամ էլեկտրաէներգիա։*



*Ղափանի պղնձահանքային կոմբինատի ֆլոտացիոն ֆաբրիկայի կոլեկտիվը ժամկետից 20 օր շուտ է կատարել կոնցենտրատի թողարկման ութ ամսվա պլանը։*

*Կատարելով ստանձնած պարտավորությունները՝ Երևանի կոշիկի № 1 ֆաբրիկայի կոլեկտիվը սիստեմատիկաբար բարձրացնում է աշխատանքի արտադրողականությունը։ Ֆաբրիկայի աշխատողները պատրաստել են այնպիսի մամլակ-կոնվեյեր, որը ցեխերից մեկում ներբան փակցնելու աշխատանքի արտադրողականությունը բարձրացրել է 50 տոկոսով։*

*Պարտիայի XXII համագումարի պատվին ծավալված սոցիալիստական մրցության մեջ մտնելուց հետո Շահումյանի շրջանի Ստալինի անվան տրիկոտաժի ֆաբրիկայի կոլեկտիվը միշտ 2—3 տոկոսով գերակատարում է իր արտադրական պլանները։ Ֆաբրիկայի կոլեկտիվը անցած 7 ամսվա համախառն արտադրանքի թողարկման պլանը կատարել է 103,8 տոկոսով և 3,8 տոկոսով գերակատարել աշխատանքի արտադրողականության բարձրացման պլանը։*

*Տարեկան պլանը ժամկետից մեկ ամիս շուտ կատարելու և երկրին լրացուցիչ կարգով 100 հազար ռուբլու արտադրանք տալու խոստումը պատվով է կատարում Լենինականի մսի պահածոների կոմբինատի կոլեկտիվը։ Այստեղ մի շարք ցեխեր, ինչպես*

օրինակ, պահածոների ու երշիկի ցեխերը, իրենց պլանները կատարում են 160—165 տոկոսով և տալիս են միայն բարձրորակ արտադրանք։ Կոմբինատը միայն այս տարի երկրին կտա երեք միլիոն տուփ պահածո։

Ստանձնած պարտավորությունները սիստեմատիկաբար բարձր ցուցանիշներով են կատարում Անդրերկաթուղու Երևանի բաժանմունքի աշխատողները։ Յոթ ամսվա ընթացքում պլանից ավելի է տեղափոխվել 270 հազար տոննա բեռ և միաժամանակ տնտեսվել 340 տոննա վառելանյութ։

Երևանի Լենինյան շրջանի արդյունաբերական ձեռնարկությունները անցած 7 ամսում յուրացրել են արտադրանքի թողարկման 35 նոր տեսակ։ Նույն ժամանակամիջոցում շրջանի ձեռնարկությունները համախառն արտադրանքի թողարկման պլանը կատարել են 104,2 տոկոսով։

Լենինականի դեպոյի կոլեկտիվը յոթ ու կես ամսում կատարել է 9 ամսվա առաջադրանք, աշխատանքի արտադրողականությունը բարձրացրել է 3,5 տոկոսով և 20 հազար ռուբլու խնայողություն կատարել։

Լենինականի «Գորգագործ» ֆաբրիկայի կոլեկտիվը 7 ամսվա արտադրական պլանը կատարել է



101,6 տոկոսով։ Ֆաբրիկայի կոլեկտիվը 80-ի փոխարեն առաջին տեսակի արտադրանքի թողարկումը հասցրել է 90 տոկոսի։

Երևանի տեքստիլ—գալանտերիայի ֆաբրիկայի կոլեկտիվը 7 ամսվա համախառն արտադրանքի պլանը կատարել է 112,2 տոկոսով, աշխատանքի արտադրողականությունը բարձրացրել է 18 տոկոսով։

Երևանի կոշիկի № 6 ֆաբրիկայի կոլեկտիվը օգոստոսի 12-ին կատարեց 8 ամսվա արտադրական պլանը և 7 տոկոսով գերակատարեց առաջին տեսակի արտադրանքի թողարկումը։

Քաջարանի պղնձամոլիբդենի կոմբինատի լեռնագործները 7 ամսվա համախառն արտադրանքի պլանը կատարել են 105,8 տոկոսով, իսկ մոլիբդենի կոնցենտրատի թողարկման պլանը՝ 108,5 տոկոսով։

Ղափանի շրջանի արդյունաբերական ձեռնարկությունները անցած 7 ամսվա համախառն արտադրանքի պլանը կատարել են 106,5 տոկոսով, որը անցյալ տարվա նույն ժամանակամիջոցի համեմատությամբ տալիս է 28,4 տոկոս աճ։

Իջևանի շրջանի արդյունաբերական ձեռնարկությունները 112,3 տոկոսով են կատարել 7 ամսվա համախառն արտադրանքի պլանը և երկրին տվել ավելի քան 32 հազար ռուբլու արտապլանային արտադրանք։

Հարազատ Կոմունիստական պարտիայի XXII համագումարը նոր հաջողություններով են նշանավորում նաև կոլտնտեսային գյուղի աշխատավորները։ Այս տարվա յոթ ամսում ռեսպուբլիկայի կոլտնտեսությունները և սովխոզները պետությանը վաճառել են 125,5 հազար ցենտներ միս, 853,4 հազար ցենտներ կաթ, 21.880 ցենտներ բուրդ, 26 միլիոն հատ ձու։

Անցած յոթ ամսում, անցյալ տարվա նույն ժամանակաշրջանի համեմատությամբ, պետությանը ավելի է վաճառվել միս՝ 8.250 ցենտներ, կաթ՝ 96 հազար ցենտներ, բուրդ՝ 2.000 ցենտներ, ձու՝ 4 միլիոն 400 հազար հատ։

Ռեսպուբլիկայի կոլտնտեսություններում և սովխոզներում զգալի չափով ավելացել է անասունների գլխաքանակը։ Օգոստոսի 1-ի տվյալներով, անցյալ տարվա նույն ժամանակամիջոցի համեմատությամբ, խոշոր եղջերավոր անասունների գլխաքանակն ավելացել է 13.037 գլխով, որից՝ կովերինը՝ 9 հազարով, իսկ ոչխարներինը և այծերինը՝ 122 հազար գլխով։

Այս տարվա առաջին կիսամյակում, անցյալ տարվա նույն ժամանակաշրջանի համեմատությամբ, Ամասիայի շրջանում մսի արտադրությունն ավելացել է 16 տոկոսով, կաթինը՝ 15,5 և բրդինը՝ 56,8 տոկոսով։ Նույն ժամանակամիջոցում խոշոր եղջերա-



վոր անասունների գլխաքանակն ավելացել է 10,9 տոկոսով, մանր եղջերավորներինը՝ 24,2, խոզերինը՝ 20,4 և թռչուններինը՝ 70,7 տոկոսով։

Կրասնոսելսկի շրջանի 15 կոլտնտեսություններից 9-ը կատարել են պետությանը կաթ վաճառելու, 7-ը՝ ձու վաճառելու տարեկան սոցիալիստական պարտավորությունները։

Վեդու շրջանի Ավշար գյուղի կոլտնտեսությունը այս տարվա առաջին կիսամյակում 50 տոննայով ավելի կաթ է ստացել, քան անցյալ տարվա նույն ժամանակամիջոցում, մսի արտադրությունն ավելացել է 28,5 տոկոսով, բրդինը՝ 30, ձվինը՝ 35 տոկոսով։

Ամասիայի, Մարտունու և Արթիկի շրջանի կոլտնտեսությունները կատարել են պետությանը կաթ վաճառելու տարեկան պլանը։

Սիսիանի շրջանի ծխախոտագործները օգոստոսի առաջին կեսին արդեն շարել էին մեկ միլիոն 100 հազար թելամետր ծխախոտ՝ անցյալ տարվա նույն ժամանակամիջոցում շարված 350 հազար թելամետրի դիմաց։

Վեդու շրջանի Ղարալար գյուղի կոլտնտեսությունը եգիպտացորենի յուրաքանչյուր հեկտարից

ստացել է 36 ցենտներ հատիկ: Ստացած բերքը լրիվին կբավարարի կոլտնտեսության խոզաբուծական և թռչնաբուծական ֆերմաների պահանջները:

Հաղթահարելով լուրջ դժվարություններ, Մեղրիի շրջկենտրոնի կոլտնտեսության անդամներ Մ. Միրզոյանը և Վ. Խաչատրյանը նույն հողամասից երեք անգամ բերք են ստացել:

Այս տարի Ախուրյանի շրջանի կոլտնտեսություններում և սովխոզներում խոշոր եղջերավոր անասունների գլխաքանակը ավելացել է մոտ 4 տոկոսով, այդ թվում կովերինը՝ 9,5, մանր եղջերավոր անասուններինը՝ 9,4, թռչուններինը՝ 19,5 տոկոսով: Յոթ ամսում, անցյալ տարվա նույն ժամանակամիջոցի համեմատությամբ՝ պետությանը ավելի է վաճառվել կաթ՝ 6,4 տոկոսով, միս՝ 4 տոկոսով, բուրդ՝ 10 տոկոսով:

Ի պատիվ ՍՄԿՊ XXII համագումարի ռեսպուբլիկայի արդյունաբերական ձեռնարկություններում, կոլտնտեսություններում ու սովխոզներում մրցությունը շարունակվում է:




Խմբագիր՝ Վ. Ն. ԵՆԳԻԲԱՐՅԱՆ



## ՆՈՐ ԳՐՔԵՐ

Ֆ. Մեհրինգ — Կարլ Մարքս — Նրա կյանքի պատմությունը, 637 էջ, գինը 1 ռուբլի 27 կոպեկ։

Շիրվանզադե — Երկերի ժողովածու, հատոր իններորդ, 613 էջ, գինը 1 ռ. 05 կոպ.։

Նորը պարտիական աշխատանքում — պարտիական աշխատանքի փորձից, 150 էջ, գինը 27 կոպ.։

Մ. Վ. Կասյան, Ծ. Ս. Բաղդասարյան — Քսուքահովացնող նյութերը մեքենաշինության մեջ, 118 էջ, գինը 19 կոպեկ։

**Отдел пропаганды и агитации**
**ЦК КП Армении**
**БЛОКНОТ АГИТАТОРА**
**№ 17 1961 г.**

ՎՖ 02287 Պատվեր 427 Տպաքանակ 8232

Հանձնված է արտադրության 25/VIII 1961 թ.։
Ստորագրված է տպագրության 1/IX 1961 թ.։

ՀՍՍՌ Կուլտուրայի մինիստրության պոլիգրաֆարդյունաբերության և հրատարակչությունների գլխավոր վարչության II տպարան, Երևան, Կնունյանցի № 8։
Գինը 8 կոպ.